Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 13

1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Ագիտատորի զրույցը



Խմբագրության հասցեն — *Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝* 33—86։

# ՍՐԲՈՒԹՅԱՄԲ ԿԱՏԱՐԵՆՔ ՀԱՑԱՄԹԵՐՈՒՄՆԵՐԻ ՊԼԱՆԸ

*Սովետական ժողովուրդը Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ, իր ստեղծագործ-հերոսական աշխատանքով հաջողությամբ բուժում է պատերազմի հասցրած վերքերը, վերականգնում և զարգացնում ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառները, անդուլ կերպով պայքարում հետպատերազմյան ստալինյան հնգամյակը չորս տարում կատարելու համար։*

*Ստալինյան հնգամյակի հաջող կատարումը մեծապես կապված է ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի 1947 թվի Փետրվարյան պլենումի կարևորագույն նշանակություն ունեցող որոշումներից բխող անհետաձգելի խնդիրների իրականացման հետ՝ հանուն գյուղատնտեսության այնպիսի վերելքի, որը հնարավորություն տա կարճ ժամանակում բնակչության համար ստեղծելու պարենամթերքների և թեթև ու տեքստիլ արդյունաբե-*

ցության հումքի առատություն և կուտակել մթերքների ու հումքի պետական անհրաժեշտ ռեզերվներ։

Սոցիալիստական ինդուստրիան ստեղծել է գյուղատնտեսության նոր արտադրողական բազա։ Սովետական պետությունը կազմակերպել է մեքենա-տրակտորային կայանների լայն ցանց, որոնք վճռական ազդեցություն են գործում կոլխոզային արտադրության վրա, բարձրացնում կոլխոզային դաշտերի բերքատվությունը։

Յուրաքանչյուր կոլխոզի համար Սովետական պետությունը ստեղծել է ցանքերն ընդարձակելու և բերքատվությունը բարձրացնելու, անասնապահությունը զարգացնելու և մթերատվությունը բարձրացնելու լիակատար հնարավորություններ և դա պարտավորեցնում է ապահովել պետության հանդեպ ունեցած պարտավորությունների արագ ու ճշգրիտ կատարումը, լիարժեք դարձնել կոլխոզնիկների աշխօրերը։

Մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները, ինչպես միշտ, այնպես էլ այս տարի գործնական պայքար են ծավալել երկրին ավելի շատ կենսամթերքներ և արդյունաբերության հումք տալու համար։ 1948 թվի առաջին կիսամյակի համար



սահմանված գյուղատնտեսական մթերքների մթերումների պետական առաջադրանքները մեր ռեսպուբլիկայում զգալիորեն գերակատարվեցին։

Մեր ռեսպուբլիկայի կոլխոզնիկները ընկեր Ստալինին ուղղած իրենց նամակում խոստացել են աճեցնել բարձր բերք և ժամանակին ու առանց կորստի հավաքել այն, ժամկետից շուտ ու լրիվին ավարտել հացահատիկի պետական հանձնումները։ Ընկեր Ստալինին տրված խոսքը սրբությամբ պետք է կատարել։

Ռեսպուբլիկայի շատ շրջաններում արդեն ծավալվել է հացահատիկի մասսայական բերքահավաքը։ Առաջին պատվիրանը հացամթերումների պլանի կատարումն է,—սովորեցնում է ընկեր Ստալինը։ Շրջանում՝ յուրաքանչյուր կոլխոզում, սովխոզում, ՄՏ կայանում նախապատրաստական ամբողջ աշխատանքը պետք է ենթարկվի այս կենտրոնական խնդիրը հաջող կատարելու գործին։

Այդ տնտեսական-քաղաքական կարևորագույն խնդրի հաջողությունը կախված է պարտիական ու սովետական կազմակերպությունների օպերատիվ ղեկավարությունից, քաղաքական ագիտացիայի կոնկրե-

տությունից, նրա նպատակայնացությունից: Ագիտատորի խնդիրն է՝ հասցնել յուրաքանչյուր կոլխոզնիկի գիտակցությանն այն, որ հացամթերումների պլանի արագ կատարումից է կախված սոցիալիստական շինարարության բոլոր կարևորագույն խնդիրների հաջող լուծումը:

Պետք է հաշվի առնել անցյալ տարվա փորձը, ընթացիկ տարվա առանձնահատկությունները, նախատեսել և կանխել այն դժվարությունները, որոնք կարող են առաջանալ բերքահավաքի և հացամթերումների ժամանակ: Մեր գյուղական ագիտատորների խնդիրն է՝ գյուղատնտեսության բնագավառի բոլոր աշխատողներին պահել մշտական մոբիլիզացիոն վիճակում տնտեսական-քաղաքական այդ կարևորագույն խնդիրը հաջողությամբ ավարտելու համար:

Այս տարի հացամթերումները կատարվելու են ավելի կազմակերպված ձևով, քան անցյալ տարի: Մեր ռեսպուբլիկայի բերքահավաքը սկսած շրջաններում կատարվող եռուն աշխատանքները ցույց են տալիս, որ կոլխոզային գյուղացիությունը տոգորված է պետության հանդեպ իր ունեցած պարտավորությունները լրիվ և ժամանակին կատարելու ոգով: Բերքահավաքը սկսած շրջա-



նների կոլխոզներն ու կոլխոզնիկները ձգտում են մեկը-մյուսից շուտ կազմակերպել հնձված բերքի փոխադրումն ու կալսումը և առաջին իսկ կալից կատարել պետության հանդեպ իրենց պարտավորությունները: Հուլիս ամսվա երկրորդ հնգօրյակի հացամթերման առաջադրանքները կատարել են Իջևանի շրջանը 141 տոկոսով, Միկոյանի շրջանը՝ 144,5 տոկոսով, Հոկտեմբերյանի շրջանը՝ 116 տոկոսով: Սակայն թերակատարել են Աշտարակի, Էջմիածնի, Ղափանի, Նոյեմբերյանի և այլ շրջանները: Անհրաժեշտ է ապահովել հացամթերումների առաջադրանքների ոչ միայն կատարումը, այլև զգալի չափով գերակատարումը կարճ ժամկետում: Բոլշևիկորեն գլխավորել կոլխոզնիկների աշխատանքային խանդավառությունը բերքահավաքը անկորուստ, արագ ու կազմակերպված կատարելու և ավարտելու համար, ինչպես նաև բերքահավաքի առաջին իսկ օրից ապահովել հացահատիկի հանձնումը պետությանը՝ գյուղական ագիտատորի պատվի գործն է: Ոչ մի դեպքում չպետք է թույլ տրվի անցյալ տարվա սխալների կրկնումը, երբ առանձին շրջաններում ու կոլխոզներում հացահատիկի հանձնման տեմպը ետ էր մնում կալսման տեմպից,

ձգձգվում էր կալսումը, որը և պատճառ էր դառնում հացամթերումների գրաֆիկի թերակատարման: Յուրաքանչյուր կոլխոզ ամեն օր մինչև հացամթերումների պլանի լիակատար կատարումը պետք է հացահատիկ հանձնի պետությանը,— այս է պահանջում յուրաքանչյուր կոլխոզի, յուրաքանչյուր կոլխոզնիկի հայրենասիրական պարտքը հարազատ պետության հանդեպ:

Կոլխոզային գյուղացիությունը խորապես գիտակցելով պետության հանդեպ ունեցած իր պարտավորությունների համաժողովրդական նշանակությունը, պետք է սրբությամբ կատարի սիրելի առաջնորդ ընկեր Ստալինին տված խոստումը՝ լրիվ և ժամկետից շուտ կատարի գյուղատնտեսական մթերքների մթերումների պետական պլանները: Դրանով նա կապահովի ամբողջ ժողովրդական տնտեսության հաջող զարգացումը, մեծապես կնպաստի մեր Հայրենիքի հետագա հզորացմանը:

---

# ՍՍՌՄ ՕԴԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՕՐԸ

ՍՍՌՄ Օդային Նավատորմի օրը, որ սովետական կառավարության որոշմամբ սահմանվել է 15 տարի առաջ, 1933 թվին, մեր երկրում դարձել է ժողովրդական ամենասիրելի տոներից մեկը: Այն տոնվում է ամեն տարի որպես սովետական ավիացիայի հզորության, նրա հիանալի կադրերի մարզվածության ու վարպետության մարտական ստուգատեսի օր: Այդ օրն անց է կացվում սովետական ժողովրդի ուշադրությունը և ուժերը ստալինյան ավիացիայի հետագա ամրապնդման ու կատարելագործման հարցերի վրա բևեռելու նշանաբանով:

Այս տարի սովետական ավիացիայի տոնն առանձնահատուկ նշանակություն է ստանում: Այն զուգադիպում է մեր օդային Նավատորմի՝ բոլշևիկյան պարտիայի և սովետական պետության սանի երեսնամյակին:

Սովետական ժողովրդի մեծ առաջնորդներ Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը սովետական

իշխանության հաստատման առաջին իսկ օրերից որպես կարևորագույն խնդիրներից մեկը առաջ էին քաշում հայրենական ավիացիայի ստեղծումը։ Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի առաջարկությամբ 1918—1919 թվերի ընթացքում Բանվորա-Գյուղացիական Պաշտպանության Խորհուրդն ավելի քան 200 որոշում է կայացրել ավիացիայի հարցերի առթիվ։ Լենինի և Ստալինի անմիջական ղեկավարությամբ, դեռևս 1918 թվին խիստ ծանր պայմաններում, ստեղծվեցին առաջին ավիացիոն ջոկատները, որոնք հսկայական դեր խաղացին սպիտակգվարդիականներին և ինտերվենտներին ջախջախելու գործում։

Սոցիալիստական տերության հզորությունը պատշաճ բարձրության հասցնելու ընդունակ ուժեղ ավիացիայի ստեղծումը սերտորեն կապված էր հզոր ինդուստրիայի հետ, որը բոլոր պայմաններն ունենար մեծ քանակությամբ ինքնաթիռներ և մոտորներ արտադրելու համար, օդային նավատորմը տեխնիկապես զինելու համար։ Այդ մեծ խնդիրը, ինչպես և երկրի սոցիալիստական ինդուստրացման ամբողջ հսկայական ծրագիրը, փայլուն կերպով իրագործվեց։

Արդեն առաջին հնգամյա պլանի կատա-



րումից հետո ընկեր Ստալինը 1933 թվի հունվարին ասում էր. «Մենք չունեինք ավիացիոն արդյունաբերություն։ Մենք այժմ այն ունենք»։

Հետագա տարիներին սովետական ավիացիան, հենվելով երկրի հարաճուն ինդուստրիալ հզորության վրա, սկսեց զարգանալ է՛լ ավելի արագ տեմպով։ Ընկեր Ստալինը սովետական ժողովրդի առաջ խընդիր դրեց՝ «Թռչել բոլորից հեռու, բոլորից արագ, բոլորից բարձր»։ Սովետական կոնստրուկտորները, սովետական օդաչուները, որոնց ժողովուրդը սիրով անվանում է ստալինյան բազեներ, պատվով կատարեցին մեծ առաջնորդի առաջադրած խնդիրը։

Հայրենական պատերազմից դեռ շատ առաջ մեր օդաչուները սահմանեցին մի շարք փայլուն ռեկորդներ, որոնք ընդմիշտ մտան մարդկության նվաճումների պատմության մեջ։ Նրանք նվաճեցին Արկտիկայի անծայրածիր տարածությունները, օդային նոր ուղիներ բաց արին հեռավոր երկրների միջև, ներթափանցեցին ստրատոսֆերայի բարձունքները։

Ամբողջ աշխարհին հայտնի են մեր նշանավոր օդաչուներ Չկալովի և Գրոմովի, Բայդուկովի և Յումաշևի, Բելյակովի և Դա-

նիլինի, Կոկկինակիի և Սերովի, Գրիզոդուբովայի, Ռասկովայի և Օսիպենկոյի անօրինակ սխրագործությունները:

Սովետական կոնստրուկտորները և օդաչուները փառքի և հզորության պսակով պսակեցին մեր ավիացիան Հայրենական Մեծ Պատերազմի տարիներին: Սովետական Օդային Նավատորմը նշանավոր դեր խաղաց հիտլերյան Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի ջախջախման գործում: «Մեր հայրենիքի պանծալի բազեները օդային կատաղի ճակատամարտերում ջախջախեցին գերմանական փառաբանված ավիացիան, որով և գործողության ազատություն ապահովեցին Կարմիր Բանակի համար և մեր երկրի բնակչությանը փրկեցին թշնամու օդային ռմբակոծություններից» (Ստալին):

Սովետական օդաչուները ցույց տվին կայունության, արիության, խիզախության, իսկական հերոսության և հայրենիքին անձնուրաց նվիրվածության փայլուն օրինակներ: Սովետական օդաչուների պանծալի գործերը բազմիցս նշված են Գերագույն Գլխավոր Հրամանատարի հրամաններում: Հայրենական Մեծ Պատերազմի ժամանակ ռազմա-օդային ուժերի մոտ 200 հազար զինվոր, սերժանտ, սպա ու գեներալ պար-



գևատրվեցին ՍՍՌ Միության շքանշաններով ու մեդալներով, իսկ ավելի քան 2 հազար օդային ամենաքաջ մարտիկներ կրում են Սովետական Միության Հերոսի Ոսկի Աստղը:

Այժմ, խաղաղ շինարարության ժամանակաշրջանում, սովետական ավիացիան նպաստում է հետպատերազմյան ստալինյան հնգամյակի հսկայական ծրագրի կատարմանը: Մեր ավիացիան գնալով ավելի լայնորեն է օգտագործվում երկրի ժողովրդական տնտեսության մեջ: Սովետական պետության անծայրածիր տերիտորիան պատած է ինդուստրիալ խոշորագույն կենտրոններն իրար հետ միացնող ավիագծերի խիտ ցանցով: Օդային Նավատորմը կոլխոզներին և սովխոզներին օգնում է բարձր բերքի համար մղվող պայքարում: Ինքնաթիռների օգնությամբ լայն մասշտաբով իրագործվում է ցանքերի ենթանուցում: Երկրի տափաստանային շրջաններում ավիացիան պայքար է մղում գյուղատնտեսության վնասատուների դեմ:

Հսկայական խնդիրներ են կանգնած Սովետական Օդային Նավատորմի աշխատողների առաջ: ՍՍՌՄ Օդային Նավատորմի օրվա առթիվ 1947 թվի օգոստոսի 3-ի իր հրամա-

նում ՍՍՌ Միության Զինված Ուժերի Մինիստր ընկ. Բուլգանինը գրում էր. «Օդաչուները և Ռազմա-Օդային Ուժերի ամբողջ անձնակազմը, կոնստրուկտորները և ավիացիոն արդյունաբերության աշխատողները պարտավոր են այսուհետև ևս անդուլ կերպով տիրապետել ավիացիոն տեխնիկային, է՛լ ավելի առաջ տանել մեր ավիացիայի զարգացման գործը, պատվով կատարելով ընկեր Ստալինի կողմից Սովետական ավիացիայի առաջ դրված խնդիրները»։

Պատասխանատու խնդիրներ են կանգնած նաև քաղաքացիական օդային նավատորմի առաջ։ Մարդատար փոխադրումների չափը հնգամյակի վերջում, 1940 թվի նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ, պետք է աճի 14 անգամ։ Հնգամյա պլանով նախատեսված են նոր գծերի բացում, նոր օդանավակայանների և օդանավահանգստների կառուցում։ Երկրի լավագույն ավիակոնստրուկտորներն աշխատում են նոր արագաթռիչ մարդատար հսկա ինքնաթիռների ստեղծման վրա, որոնք է՛լ ավելի կամրապնդեն սովետական ավիացիայի հզորությունը։

Բոլշևիկյան պարտիայի և ընկեր Ստալինի ղեկավարությամբ մեր երկիրը դարձել է հզոր



անխորտակելի ավիացիոն տերություն։ Բայց մեր ժողովուրդը կանգ չի առնում ձեռք բերված հաջողությունների վրա և իր ավիացիան առաջ է տանում է՛լ ավելի արագ տեմպով։ Նա նորանոր հաջողություններ ձեռք կբերի ավիացիայի կատարելագործման և տեխնիկական հագեցման գործում, է՛լ ավելի կամրապնդի ՍՍՌՄ Օդային Նավատորմը մեր խաղաղ ստեղծարար աշխատանքի այդ հզոր պահապանը։

***

Ռուսաստանում բոլոր երկրներից ավելի շուտ գիտնականները և գյուտարարները դրին ավիացիոն գիտության հիմքերը և ստեղծեցին աշխարհում առաջին ինքնաթիռները։ 18-րդ դարում Մ. Վ. Լոմոնոսովը հիմնավորեց օդից ավելի ծանր մարմինների օդում թռչելու սկզբունքը։ Նա կառուցեց և փորձարկեց փոքրիկ հելիկոպտեր (թռչող ապարատ, որը տեղից ուղղահայաց վեր է բարձրանում)։

Ռուս մեծ քիմիկոս Դ. Ի. Մենդելեևը ստեղծեց դիրիժաբլի էսքիզը և աշխատում էր ստրատոսֆերային աերոստատի կառուցման վրա. նա 1887 թվի օգոստոսի 7-ին թռիչք գործեց աերոստատով։

Կ. Է. Ցիոլկովսկին է հիմնավորել աերո-

դինամիկայի գաղափարը և նա է ռեակտիվ շարժման տեսության հիմնադիրը:

Ռուս մեծ գիտնական Ն. Ե. Ժուկովսկուն անվանում են ավիացիայի հայր. գիտական գործունեության 50 տարիների ընթացքում նա ավիացիայի հարցերի վերաբերյալ հրապարակել է 180 աշխատություն, ստեղծել է ժամանակակից աէրոդինամիկան և թռիչքի տեսությունը: Ս. Ա. Չապլիգինը մշակեց թևերի տեսությունը:

Ռուսաստանում են կառուցվել աշխարհում առաջին ինքնաթիռները: Առաջին ինքնաթիռի կոնստրուկտորը ծովային սպա Ա. Ֆ. Մոժայսկին է: 1882 թվին նա կառուցեց և փորձարկեց առաջին ինքնաթիռը: Արտասահմանում ինքնաթիռ կառուցվեց ավելի քան քսան տարի հետո, միայն 1903 թվին: Աշխարհում առաջին բազմամոտոր ինքնաթիռները նույնպես կառուցվել են մեր երկրում: Ավիացիայի պատմության մեջ առաջին բազմամոտոր ինքնաթիռը՝ «Ռուսկի վիտյազը» («ռուս դյուցազունը») ստեղծվել է ռուս մարդկանց ձեռքով: 1913 թվին այն օդ բարձրացավ: 1914 թվին «Իլյա Մուրոմեց» նոր բազմամոտոր ինքնաթիռը բեռ բարձրացնելու համաշխարհային ռեկորդ սահմանեց, ինչպես նաև սահմանեց թռիչքի հեռա-



վորության և երկարատևության ռեկորդ:

Ռուս գյուտարար Գ. Պ. Գրիգորովիչը կառուցեց աշխարհում առաջին հիդրոինքնաթիռը, ինչպես նաև աշխարհում առաջին կործանիչը՝ հավաքվող շասիներով:

Սակայն ռուսական ավիացիայի զարգացմանը խանգարում էր ցարական Ռուսաստանի տնտեսական հետամնացությունը, բուրժուա-կալվածատիրական ռեակցիոն կարգը: Միայն Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո պայմաններ ստեղծվեցին հայրենական ավիացիայի զարգացման համար: Թե սովետական ավիացիան ինչպիսի աղքատ ժառանգություն է ստացել, երևում է այն բանից, որ Մոսկվայում 1918 թվի մայիսի 1-ի ավիացիոն զորահանդեսին մասնակցում էր ընդամենը մեկ ինքնաթիռ:

Սովետական իշխանություն, բոլշևիկյան պարտիան չտեսնված ծաղկում ապահովեցին մեր ավիացիային:

Լենինը և Ստալինը սովետական իշխանության առաջին օրերից բացառիկ ուշադրություն էին դարձնում սեփական ավիացիայի ստեղծմանը: Քաղաքացիական պատերազմի տարիներին ստեղծվեցին ՑԱԳԻ (Կենտրոնական Աէրո-Հիդրոդինամիկ Ինս-

տիտուտ), Կարմիր Օդային Նավատորմի ինժեներների ինստիտուտ, որը հետագայում վերակառուցվեց Ժուկովսկու անվան Ռազմա-Օդային Ակադեմիայի: ՍՍՌՄ Պաշտպանական հզորության ստեղծման գործում վճռական դեր խաղացին ստալինյան հնգամյակները: Մետալուրգիական, մեքենաշինական, մոտորաշինական, ալյումինի հզոր արդյունաբերությունը հնարավորություն տվեց ստեղծելու ավիացիոն արդյունաբերություն:

Ընկեր Ստալինի նախաձեռնությամբ Համ. ԼԿԵՄ 9-րդ համագումարը 1931 թվին որոշում կայացրեց ավիացիայի նկատմամբ լենինյան կոմերիտմիության շեֆություն ստանձնելու մասին: Հազարավոր պատանիներ ու աղջիկներ գնացին ավիացիոն արդյունաբերություն: Ընկեր Ստալինի ղեկավարությամբ ստեղծված գիտա-հետազոտական ինստիտուտները, ուսումնական հաստատությունները կադրեր էին պատրաստում ավիացիայի համար:

Սովետական ժողովուրդը բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ կարճ ժամկետում ստեղծեց հզոր ավիացիա, հազարավոր հիանալի ինքնաթիռներ: 1930 թվից մինչև 1939 թիվը ՍՍՌՄ-ում ինքնաթիռների ար-



տադրությունը աճեց 6,5 անգամ: Սովետական արդյունաբերությունն սկսեց պատրաստել ամեն տեսակի ինքնաթիռներ:

ՍՍՌՄ-ն առաջին տեղն է գրավում միջազգային ավիացիոն ռեկորդների մեջ:

Սովետական ավիացիայի, նրա տեխնիկայի զարգացման, նրա կոնստրուկտորների, օդաչուների նվաճումների ամբողջ պատմությունը— այս բոլորը կապված է ընկեր Ստալինի անվան հետ: Ահա թե ինչու ժողովուրդը մեր օդաչուներին անվանում է ստալինյան բազեներ, իսկ ավիացիան՝ ստալինյան:

Ընկեր Ստալինը սովետական ավիացիայի բոլոր հաջողությունների և նրա տեխնիկական առաջադիմության ոգեշնչողն է ու կազմակերպիչը: Նա դաստիարակել է ամենատաղանդավոր օդաչուների և ավիացիոն կոնստրուկտորների մի ամբողջ համաստեղություն, որոնք հայտնի են ամբողջ աշխարհին: Սովետական ավիակոնստրուկտորներ Պետլյակովը, Յակովլևը, Լավոչկինը, Իլյուշինը, Տուպոլևը, Միկոյանը և ուրիշներ մեր օդային նավատորմը հարստացրել են ինքնաթիռների կատարյալ տեսակներով: Ստալինյան ավիացիայի հզորությունը, նրա օդաչուական կադրերի խիզախությունը և

արվեստը լիովին դրսևորվեցին Հայրենական Մեծ Պատերազմի տարիներին։ Մեր ավիացիան որակով գերազանցեց գերմանական ավիացիային, իսկ մեր պանծալի օդաչուներն իրենց պսակեցին անվեհեր մարտիկների փառքով։

Օդում թշնամիների դեմ տարած հաղթանակներին նպաստեցին բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի աշխատանքային սխրագործությունները թիկունքում։ Մեր ավիացիոն արդյունաբերությունը Հայրենական Մեծ Պատերազմի վերջին երեք տարիների ընթացքում տարեկան արտադրում էր մոտ 40 հազար ինքնաթիռ։

Հայրենական Պատերազմի վերջում ՍՍՌՄ Զինված Ուժերի ավիացիան պատերազմի սկզբի համեմատությամբ աճեց հինգ անգամ։

Պատերազմի առաջին երեք տարիներում սովետա-գերմանական ռազմաճակատում գերմանա-ֆաշիստական բանակը կորցրեց մոտ 60 հազար ինքնաթիռ և մի քանի տասնյակ հազար օդաչու։ Սովետական օդաչուները ոչնչացրին գերմանական օդային նավատորմի հիմնական կադրերին և նրա մարտական տեխնիկայի զգալի մասը։ Քյոնիգսբերգի օպերացիայի երկու օրում սո-



վետական ավիացիան կատարեց ավելի քան տաս հազար ինքնաթիռաթռիչք։ Այդ նույն ժամանակ Քյոնիգսբերգի ամրությունների վրա թափվեց հինգ միլիոն կիլոգրամ ռումբ։

Բեռլինյան օպերացիային սովետական կողմից մասնակցում էր 8.400 ինքնաթիռ։

Բեռլինի վրա գրոհ կատարելու առաջին օրը սովետական օդային ուժերը կատարեցին ավելի քան 17 հազար ինքնաթիռաթռիչք, իսկ ամբողջ օպերացիայի ժամանակ՝ մոտ 70 հազար ինքնաթիռաթռիչք։

Ամբողջ Հայրենական Մեծ Պատերազմի ժամանակ սովետական ռազմա-օդային ուժերը կատարեցին մոտ 3 միլիոն մարտական թռիչք։

Սովետական Միության եռակի Հերոս Գվարդիայի գնդապետ Պոկրիշկինը մասնակցել է 137 օդային մարտերի և անձամբ ցած է գցել հակառակորդի 59 ինքնաթիռ։ Պատերազմի ժամանակ ընկ. Պոկրիշկինը մարտեր մղելով թռել է 240 հազար կիլոմետր։ Դա հավասար է երկրագնդի շուրջը վեց անգամ թռիչք գործելուն։

Սովետական Միության եռակի Հերոս Գվարդիայի մայոր Կոժեդուբը մասնակցել է 120 օդային մարտերի և անձամբ ոչնչացրել հակառակորդի 62 ինքնաթիռ։

Հետպատերազմյան պայմաններում Սովետական Ռազմա-Օդային ուժերը զինվում են նոր, էլ ավելի առաջավոր ավիացիոն տեխնիկայով: Նոր, նշանավոր հաջողություններ են ձեռք բերել մարտական ինքնաթիռների սովետական կոնստրուկտորներ՝ ստալինյան մրցանակի լաուրեատներ Ս. Ա. Լավոչկինը, Ա. Ս. Յակովլևը, Ա. Ի. Միկոյանը:

Մեր Հայրենիքն ունի քաղաքացիական հզոր օդային նավատորմ:

Հայրենական Մեծ Պատերազմի ժամանակ Քաղաքացիական Օդային Նավատորմը ռազմա-օդային ուժերին հանձնեց ավելի քան 20 հազար օդաչու: Հայրենական Մեծ Պատերազմի տարիներին քաղաքացիական ավիացիայի օդաչուները 4.5 միլիոն ժամ թռիչք են գործել, օդով փոխադրել ավելի քան 2 միլիոն 300 հազար ուղևոր և մոտ 300 հազար տոննա ռազմական բեռներ:

Քաղաքացիական Օդային Նավատորմի օդաչուները բազմաթիվ թռիչքներ էին գործում թշնամու թիկունքում, իջեցնում էին դեսանտներ, պարտիզաններին մատակարարում սպառազինություն և ռազմամթերք:

Քաղաքացիական Օդային Նավատորմի ավելի քան 15 հազար օդաչուներ, բորտմե-



խանիկներ, ռադիստներ, բանվորներ, ինժեներներ Հայրենական Մեծ Պատերազմի ժամանակ մարտական ծառայությունների և հերոսական աշխատանքի համար պարգևատրված են Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով: Քաղաքացիական Օդային Նավատորմի 12 օդաչուների շնորհված է Սովետական Միության Հերոսի կոչում, իսկ նրանցից երեքի՝ Հարավսլավիայի ժողովրդական Հերոսի կոչում:

Հայրենական Մեծ Պատերազմում մեր տարած հաղթանակից հետո, սովետական Քաղաքացիական Օդային Նավատորմն սկսեց զարգանալ էլ ավելի արագ տեմպով: Արդեն 1945 թվին փոխադրումների ընդհանուր ծավալը նախապատերազմյան մակարդակից անցել էր երեք անգամ:

Հնգամյա պլանը նախատեսում է Քաղաքացիական Օդային Նավատորմի հետագա զգալի աճում: Երկրի օդային գծերի ցանցը նոր հնգամյակի վերջում կհասնի մինչև 175 հազար կիլոմետրի: Բեռնափոխադրումների ծավալը 1940 թվի համեմատությամբ կաճի ավելի քան 13 անգամ, փոստինը՝ 7 անգամ:

# ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐՆԻԿԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՕՐԸ

Ֆիզկուլտուրնիկի Համամիութենական օրը սովետական ժողովրդի տրադիցիոն տոնն է։ Այդ օրը սովետական ֆիզկուլտուրնիկներն իրենց անսահման սերն ու նվիրվածությունն են հայտնում սոցիալիստական հայրենիքին, բոլշևիկների փառապանծ պարտիային, ժողովուրդների մեծ առաջնորդ ընկեր Ստալինին։

Ֆիզկուլտուրնիկի Համամիութենական օրը Սովետական Միության ժողովուրդը նշում է մեր երկրի քաղաքական ու տնտեսական հրսկայական վերելքի պայմաններում։ Սովետական ֆիզկուլտուրնիկներն ու ֆիզկուլտուրնիկուհիները, սոցիալիստական Հայրենիքի արի զավակները, ամբողջ ժողովրդի հետ միասին անձնվիրաբար աշխատում են ստալինյան նոր հնգամյա պլանը չորս տարում կատարելու համար և իրենց պատվավոր տեղն են գր-



րավում սոցիալիստական մրցության առաջավորների շարքերում։

«Մեր աշխատանքային երկրում,— ասում էր Լենինը,— հարկավոր են ֆիզիկապես ամուր մարդկանց, կամքի, արիության, եռանդի, հաստատակամության տեր մարդկանց միլիոնավոր բանակներ. նրանց է պատկանում ապագան, նրանց ձեռքով է նվաճվելու մարդկային հասարակության նոր հիմքերի կառուցման իրավունքը»։

Բոլշևիկյան պարտիայի հմուտ ղեկավարությամբ մեր երկրում պատմական կարճ ժամանակաշրջանում ստեղծվեց աշխարհում ֆիզիկական դաստիարակության ամենաառաջավոր սիստեմը, որի հիմքն է կազմում «Պատրաստ աշխատանքի և ՍՍՌՄ պաշտպանության» կրծքանշանի կոմպլեքսը։

Պարտիայի ու կառավարության որոշումները հանդիսացան ֆիզիկական կուլտուրայի և սպորտի կազմակերպությունների աշխատանքի մարտական ծրագիրը։ Պարտիայի ցուցումները դարձան սովետական ֆիզկուլտուրնիկների պայքարի դրոշը, մեր երկրում ֆիզկուլտուրայի մասսայական շարժում ստեղծելու գործում, որը փառքով պսակվեց Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմում։ Հայրենական պատերազմի

ճակատներում հազարավոր ռազմիկ ֆիզկուլտուրնիկներ թշնամու դեմ պայքարելիս ցույց տվեցին արիության, խիզախության և բարձր կարգապահության փայլուն օրինակներ։

Հետպատերազմյան ժամանակաշրջանը հանդիսացավ սովետական ֆիզկուլտուրայի և սպորտի կազմակերպությունների կազմակերպորեն ամրապնդման շրջան և դա ավելի մեծ հնարավորություն տվեց ֆիզկուլտուրան դարձնելու մասսայական ու կրկնապատկելու սպորտային նվաճումները։

Սովետական Միությունում չկան և չեն կարող լինել սպորտի այնպիսի վայրենի ձևեր, որոնք գոյություն ունեն արտասահմանում։ Սպորտի այսօրինակ բնույթը իր արտահայտությունն է գտել Ամերիկայում, Անգլիայում, Ֆրանսիայում և կապիտալիստական մի շարք այլ երկրներում։ Օրինակ՝ ամերիկյան ազատ ըմբշամարտության ժամանակ թույլատրվում է հակառակորդի աչքերը հանել։ Ահա մի քանի տարի է, որ ամերիկյան սպորտային շահամոլները զվարճության համար կազմակերպում են 4-5 տարեկան երեխաների միջև բռնցքամարտության մրցումներ։ Հանրահայտնի վազող նեգր Ջ. Օուենսը ստիպված է լինում մրցելու ձիերի և շների հետ։



Լավագույն սպորտսմենը արտասահմանում իր տիրոջ համար հանդիսանում է ապրանք, որին իրավունք է վերապահվում վաճառել նրան մի այլ սպորտային ձեռնարկատիրոջ։ Ամերիկյան բռնցքամարտիկ Ռոբինսոնը ըսպանվեց ռինգում, որովհետև նրա տերը ստիպեց նրան մրցելու, չնայած նրան, որ նա գիտեր Ռոբինսոնի գանգի վնասված լինելու մասին։

Սովետական սպորտը ամենամասսայականն է ամբողջ աշխարհում, այն խորապես մտել է մեր ժողովրդի կենցաղի մեջ և արմատապես տարբերվում է սպորտի կապիտալիստական սիստեմից։

1947 թվին ֆիզկուլտուրնիկների Համամիութենական շքերթի մասնակիցների հետ հանդիպման ժամանակ ընկ. Մոլոտովը ասաց,—

«Մենք պետք է ցանկանանք նաև այն, որպեսզի մեր Սովետական Միությունում լինեն ավելի շատ սպորտսմեններ, որպեսզի մեր շարքային սպորտսմենները լինեն շատ, քանի որ վերջին հաշվով գործը վճռում են շարքային սպորտսմենները և սպորտի մասսայականությունը»։

Սովետական Միության լայն խավերին հայտնի են մեր հազարավոր սպորտսմեննե-

րի անունները, որոնք՝ ստալինյան հոգատարությամբ շրջապատված, բարձրացնելով իրենց սպորտային-տեխնիկական նվաճումները, առաջնակարգ տեղեր են գրավում համաշխարհային սպորտային մրցումներում։ Ն. Դումբաձեն, Տ. Սևրյուկովան, Կ. Մայուչայան սպորտի թեթև ատլետիկայի ձևում սահմանելով համաշխարհային նոր ռեկորդներ, արժանացան Եվրոպայի չեմպիոնի բարձր կոչման։

Օսլո քաղաքում թեթև ատլետիկայի Եվրոպայի առաջնության մրցումներում սովետական սպորտսմենները ստացան 6 ոսկյա, 5 արծաթյա և 17 բրոնզյա մեդալներ։ Գ. Նովակը, Յա. Կուցենկոն, Ա. Բոժկոն, Ի. Ազգարովը, Ի. Մեխանիկը և ուրիշներ ծանր ատլետիկայի գծով բարձր են պահում Սովետական Միության սպորտային պատիվը։ Մեծ սեր են վայելում նաև Սովետական Միության շախմատիստներ՝ շախմատի համաշխարհային չեմպիոն Մ. Բոտվիննիկը, Վ. Սմիսլովը, Պ. Կերեսը և ուրիշները։

Ֆիզկուլտուրան և սպորտը իր մասսայական բնույթով հսկայական հաջողությունների է հասել նաև մեր ռեսպուբլիկայում։ Սպորտային կադրեր ստեղծելու նպատակով Երևանում հիմնադրված է Ֆիզկուլտուրայի պե-



տական ինստիտուտ, որն այս տարի տվեց բարձրագույն մասնագիտական կրթություն ունեցող 46 շրջանավարտ։ Երևանի ֆիզկուլտուրայի տեխնիկումը իր գոյության 15 տարիների ընթացքում ռեսպուբլիկայի ֆիզկուլտուրայի կազմակերպություններին և մասսայական դպրոցներին տվել է միջնակարգ կրթությամբ բազմաթիվ կադրեր։

Ֆիզկուլտուրայի և սպորտի մասսայական բնույթին փայլուն ապացույցն է հանդիսանում այն փաստը, որ այժմ ռեսպուբլիկայում ունենք ֆիզկուլտուրայի 1760 կոլեկտիվներ և խմբակներ, որոնցում ընդգրկված են 86.874 ֆիզկուլտուրնիկներ։

Ուժեղ թափ է ստացել «Պատրաստ աշխատանքի և ՍՍՌՄ պաշտպանության» կրծքանշանակիրներ պատրաստելու գործը։ 1947—48 տարում ռեսպուբլիկայում կրծքանշանակիրներ են դարձել 23.394 երիտասարդներ, պատանիներ և աղջիկներ։

Սպորտի տարբեր ձևերից սահմանված են 246 ռեկորդներ։ Ռեսպուբլիկայի լավագույն սպորտսմեններ Հ. Շահինյանը, Ի. Ազգարովը, Ե. Արիստակեսյանը, Ս. Վարդանյանը, Ս. Համբարձումյանը, Ռ. Մանուկյանը, Ս. Սավելևը, Վ. Բաղդասարյանը, Ն. Հովհաննիսյանը, Ս. Արակչյանը և ուրիշները ոչ մի

*ջանք չեն խնայում իրենց նվաճումները կրկնապատկելու և նորանոր երիտասարդ կադրեր պատրաստելու գործում։ Իրենց սպորտային փայլուն ցուցանիշների համար սպորտի միութենական վաստակավոր վարպետի կոչում են ստացել 8 մարդ, վարպետի՝ 20 մարդ և «Գերազանցիկ ֆիզկուլտուրնիկ» կրծքանշան են ստացել 8 մարդ։*

*Սովետական Միության չեմպիոններ Ս. Վարդանյանը արժանացել է ոսկյա մեդալի, իսկ Ի. Ազգարովը, Ն. Արիստակեսյանը և Ա. Նազարյանը՝ արծաթյա մեդալների։*

*Ֆիզկուլտուրան և սպորտը լայն մուտք են գործել նաև կոլխոզային գյուղը։ Ֆիզկուլտուրայի կոլխոզային կոլեկտիվների թիվը հասնում է 549-ի, որոնցում ընդգրկված են 22.268 ֆիզկուլտուրնիկներ։*

*Կոլխոզային ֆուտբոլային գավաթի առաջնության մրցումներում առաջին տեղը գրավեց Կոտայքի շրջանի Օրջոնիկիձեի անվան կոլխոզի թիմը, որը նվաճեց գավաթը։*

*Ռեսպուբլիկայում ֆիզկուլտուրայի և սպորտի մասսայական շարժում ստեղծելու գործում իրենց պատվավոր տեղն են գրավում սպորտային կամավոր ընկերությունները։*

*«Դինամո» և «Սպարտակ» ֆուտբոլային լավ թիմերի կողքին աչքի են ընկնում նաև*



*Կիրովականի Քիմիական գործարանի և Լենինականի Տեքստիլ կոմբինատի ֆուտբոլային թիմերը։*

*Բոլշևիկյան պարտիայի և Սովետական կառավարության հոգատարության շնորհիվ օրեցօր ծաղկում ու բարգավաճում են Սովետական ֆիզիկական կուլտուրան և սպորտը, որոնց առջև դրված խնդիրները դառնում են ավելի մեծ և ավելի պատվավոր։*

*«Մենք ուզում ենք,— ասում էր Մ. Ի. Կալինինը,— բազմակողմանիորեն զարգացնել մարդուն, որպեսզի նա կարողանա լավ վազել, լողալ, արագ ու գեղեցիկ քայլել, որպեսզի նրա բոլոր օրգանները կանոնավոր լինեն, մի խոսքով որպեսզի նա լինի նորմալ, առողջ մարդ, պատրաստ աշխատանքի և պաշտպանության համար, որպեսզի բոլոր ֆիզիկական հատկություններին զուգահեռ ճիշտ զարգանան նրա նաև մտավոր հատկությունները»։*

*Մեր երկրի վերականգնման և զարգացման ստալինյան հնգամյա պլանը ֆիզկուլտուրայի շարժման առաջ դրել է նոր և պատասխանատու խնդիրներ։*

*Կազմակերպչորեն ամրապնդել ֆիզիկական կուլտուրայի կոլեկտիվների ներքին աշխատանքը, կրկնապատկել նրանց թիվը՝*

կոլխոզներին, սովխոզներին, մեքենատրակտորային կայաններին, արդյունաբերական ձեռնարկություններին և հիմնարկներին կից կազմակերպել նոր կոլեկտիվներ:

Բարձր հիմքերի վրա դնել ֆիզկուլտուրայի մասսայական շարժման հիմքը հանդիսացող «Պատրաստ աշխատանքի և ՍՍՌՄ-ի պաշտպանության» կոմպլեքսի նորմաների ընդունման գործը, գերակատարել ընթացիկ տարում կրծքանշանակիրներ պատրաստելու ինքնապարտավորությունների պլանը: Արմատապես բարելավել դպրոցականների ֆիզիկական դաստիարակությունը, նրանց համար ստեղծել բոլոր հնարավորությունները պարապմունքներն օրինակելի կերպով կազմակերպելու համար:

Սովետական ֆիզկուլտուրնիկները և ֆիզկուլտուրնիկուհիները ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում լինելով առաջավորների շարքում, պետք է Մեծ Հոկտեմբերի 31-րդ տարեդարձը դիմավորեն արտադրական-սպորտային բարձր ցուցանիշներով:

ՀՐ. ՍԻՄՈՆՅԱՆ

(Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Ֆիզկուլտուրայի և սպորտի գործերի կոմիտեի նախագահի տեղակալ)

---

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ

# ԿՐԿՆԱՊԱՏԿԵՆՔ ՄԵՐ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

(Ագիտատոր Գ. Սիմոնյանի զրույցը)

Ախտայի շրջանի Ցանոտան գյուղի Գր. Հարությունյանի անվան կոլխոզի աշխատավորները ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումը կենսագործելու ճանապարհին հասել են զգալի հաջողությունների: Անցյալ տարի բարձր բերք նվաճելու համար կոլխոզի վարչության նախագահ Մ. Սարգսյանին, բրիգադիր Տ. Հովհաննիսյանին և օղակավար Ս. Վարդանյանին շնորհվել է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում, առաջավոր կոլխոզնիկներից 24 մարդ պարգևատրվել են շքանշաններով ու մեդալներով: Կոլխոզը այս տարի նորանոր պարտավորություններ է ստանձնել ավելի բարձր բերք նվաճելու համար: Ագիտատորները իրենց զրույցների ընթացքում մասսայականացնում են բարձր բերքի վարպետների, սոցիալիստական մրցության առաջավորների փորձը:

կոլխոզներին, սովխոզներին, մեքենատրակտորային կայաններին, արդյունաբերական ձեռնարկություններին և հիմնարկներին կից կազմակերպել նոր կոլեկտիվներ։

Բարձր հիմքերի վրա դնել ֆիզկուլտուրայի մասսայական շարժման հիմքը հանդիսացող «Պատրաստ աշխատանքի և ՍՍՌՄ-ի պաշտպանության» կոմպլեքսի նորմաների ընդունման գործը, գերակատարել ընթացիկ տարում կրծքանշանակիրներ պատրաստելու ինքնապարտավորությունների պլանը։ Արմատապես բարելավել դպրոցականների ֆիզիկական դաստիարակությունը, նրանց համար ստեղծել բոլոր հնարավորությունները պարապմունքներն օրինակելի կերպով կազմակերպելու համար։

Սովետական ֆիզկուլտուրնիկները և ֆիզկուլտուրնիկուհիները ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում լինելով առաջավորների շարքում, պետք է Մեծ Հոկտեմբերի 31-րդ տարեդարձը դիմավորեն արտադրական-սպորտային բարձր ցուցանիշներով։

ՀՐ. ՍԻՄՈՆՅԱՆ

(Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Ֆիզկուլտուրայի և սպորտի գործերի կոմիտեի նախագահի տեղակալ)

---

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ

# ԿՐԿՆԱՊԱՏԿԵՆՔ ՄԵՐ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

(Ագիտատոր Գ. Սիմոնյանի զրույցը)

Ախտայի շրջանի Ֆանտան գյուղի Գր. Հարությունյանի անվան կոլխոզի աշխատավորները ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումը կենսագործելու ճանապարհին հասել են զգալի հաջողությունների։ Անցյալ տարի բարձր բերք նվաճելու համար կոլխոզի վարչության նախագահ Մ. Սարգսյանին, բրիգադիր Տ. Հովհաննիսյանին և օղակավար Ս. Վարդանյանին շնորհվել է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում, առաջավոր կոլխոզնիկներից 24 մարդ պարգևատրվել են շքանշաններով ու մեդալներով։ Կոլխոզը այս տարի նորանոր պարտավորություններ է ստանձնել ավելի բարձր բերք նվաճելու համար։ Ագիտատորները իրենց զրույցների ընթացքում մասսայականացնում են բարձր բերքի վարպետների, սոցիալիստական մրցության առաջավորների փորձը։

Ստորև տպագրում ենք դաշտավարական № 2 բրիգադայի ագիտատոր Գ. Սիմոնյանի «Կրկնապատկենք մեր նվաճումները» թեմայով զրույցի համառոտ շարադրությունը։



— ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումը,— ասաց ագիտատորը,— հանդիսանում է կոլխոզային գյուղի աշխատանքի ու պայքարի մարտական ծրագիրը։ Կոլխոզնիկները և կոլխոզնիկուհիները՝ զինվելով այդ ծրագրային որոշումով, պարտիական կազմակերպությունների գլխավորությամբ զգալի նվաճումներ են ձեռք բերել հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության նոր վերելքն ապահովելու ուղղությամբ։ 1947 թվին սովետական գյուղացիությունը նախորդ տարվա համեմատությամբ հացահատիկի համախառն բերքը ավելացրեց 58 տոկոսով։ 1947 թվին բարձր բերք նվաճելու համար մեր երկրի 1395 կոլխոզնիկների, տրակտորիստների և գյուղատնտեսության աշխատողների շնորհվել է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում, իսկ տասնյակ հազարավոր կոլխոզնիկներ, կոլ-



խոզնիկուհիներ, ՄՏ կայանների ու սովխոզների աշխատողներ, գյուղատնտեսության մասնագետներ պարգևատրվել են ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով։

Մեր կոլխոզը, կիրառելով իննդաշտյան ցանքաշրջանառությունը, անցյալ տարի գերազանցել է նախապատերազմյան բերքատվության մակարդակը. 1940 թվին հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը կազմել է 8 ցենտներ, 1947 թվին այն կազմել է 14 ցենտներ։ Մեր բրիգադան նույնպես բարձր ցուցանիշների հասավ։ 1943 թվի հեկտարից 9 ցենտներ բերքի դիմաց անցյալ տարի հեկտարից ստացավ 30,48 ցենտներ հացահատիկի բերք։ Դրա շնորհիվ բրիգադիր ընկ. Տ. Հովհաննիսյանին շնորհվեց Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում։ Բարձր բերք նվաճեց 18-ամյա կոմերիտական Սերյոժա Վարդանյանի օղակը։ Օղակի կոլխոզնիկները իրենց ամրացված 8 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացան 30,87 ցենտներ հացահատիկ։ Բարձր բերքի երիտասարդական այդ օղակում աչքի ընկավ հայրենադարձ Սուլթան Բաղրամյանը, որը պարգևատրվեց Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով։ Կոլ-

խոզը անցյալ տարի աշխօրին բաշխեց 6 և կես կիլոգրամ միայն հացահատիկ։ Շատ կոլխոզնիկներ այնքան բերք են ստացել, որ կարող են իրենց ընտանիքներին կերակրել երկու, երեք և ավելի տարի։ Շարքային կոլխոզնիկներ Միսակ Մկրտչյանը և Գրիգոր Հովսեփյանը ստացել են 6-ական տոննա միայն հացահատիկ, իսկ հայրենադարձ Ա. Աղամալյանի ընտանիքը ստացել է վեց և կես տոննա հացահատիկ։ Այս բոլորը արդյունք են ամենից առաջ աշխատանքային կարգապահության բարձրացման ու սոցիալիստական մրցության ծավալման։ Մեր կոլխոզում գրեթե բոլոր կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները կատարում են աշխօրերի պարտադիր մինիմումը։ Բրիգադան, օղակը ամրապնդվել է։ Մեզ մոտ աշխատանքային կարգապահությունը ավելի է ամրապնդվել ՍՍՌՄ Մինիստրների Սովետի «Կոլխոզներում աշխատանքի կազմակերպումը բարելավելու, արտադրողականությունը բարձրացնելու և վարձատրությունը կարգավորելու միջոցառումների մասին» որոշումից հետո։ Կոլխոզնիկները և կոլխոզնիկուհիները իրենց անձնական բարեկեցության աղբյուրը համարում են հանրային տնտեսությունը։

Այստեղ ագիտատորը քաղվածքներ է բե-



րում հարվածային կոլխոզնիկների Համամիութենական 2-րդ համագումարում ընկեր Ստալինի արտասանած ճառից։ Նա նշում է, որ ընկեր Ստալինը մեր երկրի բարեկեցության հիմքը համարել է բոլոր կոլխոզնիկների ազնիվ աշխատանքը։

Որպես օրինակ վերցնենք մեր բրիգադայի առաջավոր կոլխոզնիկներ Մուշեղ Մկոյանին, Մացակ Խաչատրյանին, Արամ Գաբրիելյանին, Վերգուշ Մկրտչյանին. նրանք ազնիվ, անձնվեր աշխատողներ են, դուք ինքներդ եք տեսնում, թե նրանք ինչպիսի եռանդով են աշխատում։ Բրիգադայի բոլոր աշխատունակ կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները օգնում են բարձր բերքատվությունն ապահովելուն։ Մենք ունենք 47 տղամարդ, 48 կին, 31 պատանի աշխատողներ, որոնք տարվա բոլոր եղանակներին մասնակցություն են ունենում կոլխոզային աշխատանքներին և մրցում բարձր բերքի համար։

Ինչպես կոլխոզում, այնպես էլ բրիգադայում սոցիալիստական մրցությունը մեր հաջողությունների գրավականն է։ Ընկեր Ստալինին ուղղված նամակում մեր կոլխոզը պարտավորություն է ստանձնել 258 հեկտար տարածության յուրաքանչյուր

հեկտարից ստանալ 113 փութ ցորենի բերք։ Մեր բրիգադան պարտավորվել է 25 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստանալ 198 փութ աշնանացան ցորենի բերք, ընկ. Գևորգյանի օղակը պարտավորվել է 15 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստանալ 200 փութ աշնանացան ցորենի բերք, կթվորուհի ընկ. Ջանո Թաշոյանը պարտավորվել է 9 կովից աճեցնել 9 հորթ և յուրաքանչյուր կովից կթել 1200 լիտր կաթ, խոզապահ Հմայակ Հակոբյանը պարտավորվել է 10 մայր խոզից ստանալ և աճեցնել 120 խոճկոր և տարվա վերջում դրանց կենդանի քաշը հասցնել մինչև 50 կիլոգրամի։

Ընկերներ, այժմ մենք ապրում ենք մեծ Ստալինին տված մեր խոստումը կատարելու ամենավճռական օրերը։ Դուք գիտեք, որ կոլխոզը մրցության մեջ է մտել Վրաստանի Կվարելի շրջանի Շիլդա գյուղի Կույբիշևի անվան կոլխոզի հետ։

Մ. Մկոյան (կոլխոզնիկ).— Ցանկալի է պատմեք, թե մեր դելեգացիան Կույբիշևի անվան կոլխոզում ի՞նչով է զբաղվել, ի՞նչ նորություններ է բերել։

Գ. Սիմոնյան.— Օրերս կոլխոզի 10 առաջավորներ կոլխոզի վարչության նախա-



գահ Սոցիալիստական Աշխատանքի Հերոս ընկ. Մինաս Սարգսյանի գլխավորությամբ եղան Շիլդա գյուղի Կույբիշևի անվան կոլխոզում։ Ես նույնպես մտնում էի դելեգացիայի կազմում։ Մենք եղբայրական Վրաստանի կոլխոզնիկների հետ մինչև այդ նամակագրական կապով էինք ծանոթ։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրից հայտնի էր դարձել, որ Շիլդա գյուղի կոլխոզնիկները նույնպիսի նվաճումների են հասել, ինչպես մեր կոլխոզը։ Այդ օրվանից էլ նամակագրություն էինք հաստատել և խնդրել մրցության մեջ մտնել։ Կոլխոզի վարչության նախագահ ընկ. Վասիլի Ցիսկարաշվիլու պահանջով մենք այցելեցինք նրանց, ծանոթացանք նրանց աշխատանքին, պատմեցինք մեր առաջավորների փորձի մասին։ Կույբիշևի կոլխոզում այս տարի եգիպտացորենի լավ բերք է աճեցվել, առատ բերք է սպասվում նաև այգիներից։ Կոլխոզում լավ է կիրառվում ագրոկոմպլեքսը, ցանքերի մշակությունը կատարվել է ժամանակին և բարձր որակով։ Միջնակների հաշվին ավելացել են ցանքատարածությունները 24 հեկտարով։

Այդ հանդիպման ժամանակ երկու կոլխոզների ներկայացուցիչները կնքել են սո-

ցիալիստական մրցության պայմանագիր։ Ինչպես տեսնում եք ուժեղ մրցակից ունենք։

**Մարտիրոսյան** (*կոլխոզնիկ*).— Լավ կլինի ծանոթացնեք այդ պայմանագրի հետ։

**Գ. Սիմոնյան**.— Այդ պայմանագրի տեքստը, ինչպես գիտեք, մենք մինչև այդ քննարկել ենք կոլխոզնիկների ժողովում, և համարյա քիչ է փոփոխության ենթարկվել։ Բայց չի խանգարի նորից ծանոթացնել։ Միջկոլխոզային սոցմրցության պայմանագրով երկու կոլխոզները պարտավորվել են.

Ձգտել, որպեսզի ամեն կերպ և ճշգրիտ կերպով իրագործվի ագրոտեխնիկական միջոցառումների կոմպլեքսը, անցած տարվա համեմատությամբ բարձրացվի հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը, միջին հաշվով 2,5—3 ցենտներով մեկ հեկտարից՝ ամբողջ ցանքատարածությունում։

Հունձը ու կալսումը օրինակելիորեն կազմակերպել, ապահովել մեր կոլխոզների կողմից Ախտայի և Կվարելի շրջաններում հացամթերման պլանի կատարումը մյուս գյուղերից շուտ։

1949 թվին ամբողջ ցանքատարածությունում բարձր բերքի ամուր հիմք դնելու համար մենք պարտավորվել ենք լավագույն



ագրոտեխնիկական ժամկետներում լավ մշակված ցելերում ցանել աշնանացան հացահատիկ, և գարնանացանի ամբողջ տարածությունում կատարել ցրտահերկ։ Մինչև Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 31-րդ տարեդարձը մենք պարտավոր ենք լրիվ վերջացնել կոլխոզների էլեկտրիֆիկացումը և այդ նույն ժամկետում կազմակերպել հնչուն կինո և ռադիոհանգույց։

Սոցիալիստական մրցության պարտավորություններից մեկն էլ այն է, որ գերակատարենք անասնապահության զարգացման պետական պլանային առաջադրանքը, արմատապես բարելավենք խոշոր եղջերավոր անասունների մայրերի ցեղական կազմը, բարձրացնենք անասունների մթերատվությունը։

— Մեր խնդիրն է,— վերջում ասաց ագիտատորը,— լարել բոլոր ուժերը, էլ ավելի բարձրացնել աշխատանքային կարգապահությունը, ծավալել սոցիալիստական մրցությունը, պատվով կատարել սիրելի առաջնորդ Մեծ Ստալինին տրված խոստումը, պատվով դուրս գալ միջկոլխոզային սոցիալիստական մրցությունից։

# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԵՋ ԿԱԶՄԱԿԵՐՊՎՈՂ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

## I

### ՍՍՌՄ Օդային Նավատորմի օրը

*1. Մեր երկիրը ավիացիայի ծննդավայրն է։ Համաշխարհային ավիացիոն գիտության հիմնադիրներն են Դ. Ի. Մենդելեևը, Ն. Ե. Ժուկովսկին, Կ. Է. Ցիոլկովսկին և Ս. Ա. Չապլիգինը։ Աշխարհում առաջին ինքնաթիռը Ա. Ֆ. Մոժայսկու ինքնաթիռն է։*

*2. Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը, բոլշևիկների պարտիան Սովետական Օդային Նավատորմի ստեղծողներն ու ղեկավարներն են։ Լենինի և Ստալինի ցուցումներով սովետական առաջին ավիացիոն ջոկատների ստեղծումը քաղաքացիական պատերազմի և ինտերվենցիայի տարիներին։ Ավիացիոն առաջին գործարանների, ավիացիոն առաջին ուսումնական հաստատությունների և գիտա-հետազոտական ինստիտուտների ստեղծումը (ՑԱԳԻ, Ն. Ե. Ժուկովսկու անվան Ռազմա-Օդային Ակադեմիա)։ Քաղաքացիական ավիացիայի ստեղծումը։*

*3. ՍՍՌՄ-ն ավիացիոն մեծ տերություն է։ Մեր երկրի ագրարայինից ինդուստրիալ դառնալը։ Ավիացիոն հզոր արդյունաբերության ստեղծումն ստալինյան ա-*



*ռաջին հնգամյակի հետևանքով։ Սովետական Օդային Նավատորմի հզոր վերելքը։ Ընկեր Ստալինի անձնական ուշադրությունն ավիացիայի, նրա մարդկանց և տեխնիկայի նկատմամբ։ Ընկ. ընկ. Գրոմովի, Շեստակովի, Չկալովի, Ռասկովայի, Գրիզոդուբովայի, Կոկկինակիի և ուրիշների նշանավոր թռիչքները։ Լենինյան-ստալինյան կոմերիտմիության՝ օդային նավատորմի շեֆի՝ դերը սովետական ավիացիայի հաջողությունների մեջ։ Քաղաքացիական Օդային Նավատորմի հաջողությունները։*

*4. Սովետական ավիացիայի դերը Հայրենական Մեծ Պատերազմում։ Ստալինյան ավիացիան Սովետական Զինված Ուժերի զորքերի հիմնական տեսակներից մեկն է։ Սոցիալիստական ավիացիայի հերոսներ՝ Գաստելլո, Տալալիխին, Սուպրուն, Սաֆոնով, Պոկրիշև, Պոկրիշկին, Կոժեդուբ։ Ընկեր Ստալինը պատմական հաղթանակի նվաճման գործում սովետական ավիատորների մատուցած ծառայությունների մասին (Գերագույն Գլխավոր Հրամանատարի 1945 թվի № 51 հրամանը)։ Լենինի-Ստալինի պարտիան Հայրենական Մեծ Պատերազմի տարիներին ստալինյան ավիացիայի, ՍՍՌՄ բոլոր զինված ուժերի տարած հաղթանակների կազմակերպիչն ու ոգեշնչողն է։*

*5. Սովետական Օդային Նավատորմի նոր խնդիրները հետպատերազմյան ժամանակաշրջանում։ Անցած պատերազմի մարտական փորձի տիրապետումը։ Նոր տեխնիկայի տիրապետումը։ Սովետական Ռազմա-*

Օդային Նավատորմը սովետական մարդկանց խաղաղ ստեղծարար աշխատանքի և սովետական պետության շահերի պահապանն է։ Քաղաքացիական ավիացիայի զարգացումը ստալինյան Նոր հնգամյակում։ Ավիացիային Աջակցող Կամավոր Ընկերությունը և նրա խնդիրները։ Ստալինյան մրցանակի լաուրեատ-սովետական կոնստրուկտորները։

6. Սովետական Օդային Նավատորմի օրը— սովետական ավիատորների կողմից իրենց ձեռք բերած նորանոր հաջողությունների և նվաճումների մասին իր ժողովրդին հաշվետվության տալու օրն է, սոցիալիստական հայրենիքի հզորության հետագա ամրապնդման համար սովետական մարդկանց ուժերը մոբիլիզացիայի ենթարկելու օրը։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Սովետական Միության Հայրենական Մեծ Պատերազմի մասին։*

*ԻՈՍԻՖ ՎԻՍՍԱՐԻՈՆՈՎԻՉ ՍՏԱԼԻՆ, Համառոտ կենսագրություն։*

*Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ.— Սովետական Զինված Ուժերի երեսուն տարին։ Զեկուցում Մեծ Թատրոնում 1948 թվի փետրվարի 23-ին գումարված հանդիսավոր նիստում։ «Սովետական Հայաստան» օրաթերթ։ 1948 թ. փետրվարի 24։*

*Ավիացիայի մարշալ Կ. ՎԵՐՇԻՆԻՆ.— Հոդված «Վեստնիկ Վոզդուշնովո ֆլոտա» ամսագրում, № 2, 1948 թ. «Սովետական ավիացիան Հայրենիքի ազա-*



*տության և անկախության համար մղված մարտերում»։*

*Վ. Պ. ՄՈՍԿՈՎՍԿԻ.— ՍՍՌՄ Ռազմա-Օդային ուժերը (1918—1948 թ. թ.) Համառոտ ակնարկ։ Լենինգրադ, 1948 թ. 112 էջ։*

*Ն. ԲՈԲՐՈՎ.— Չկալով։ Կենսագրական պատմվածք։ Պետքաղհրատ, 1940 թ., 319 էջ։*

*Բ. ՊՈԼԵՎՈՅ.— Պատմվածք իսկական մարդու մասին։ Պետքաղհրատ, 1948 թ., 320 էջ։*

*Վ. ԿԱՎԵՐԻՆ.— Երկու կապիտան։ «Մոլոդայա Գվարդիա», 1947 թ. 592 էջ։*

*Մ. ՌԱՍԿՈՎԱ.— Շտուրմանի օրագրերը։ «Մոլոդայա Գվարդիա», 1939 թ. 228 էջ։*

*Ա. Պ. ՇՏԵՊԵՆԿՈ.— Հատուկ առաջադրանքը։ Շտուրմանի օրագրեր։ Լենինգրադ, 1944 թ., 94 էջ։*

*Ս. ՎԻՇԵՆԿՈՎ.— Փորձարկումները (Ակնարկ փորձարկու օդաչուների աշխատանքի մասին)։ «Մոլոդայա Գվարդիա», 1947 թ. 238 էջ։*

## II

## ՍՍՌՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ՈՐՈՇՈՒՄԸ՝ ԿՈԼԽՈԶՆԵՐՈՒՄ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ ԲԱՐԵԼԱՎԵԼՈՒ, ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼՈՒ ԵՎ ՎԱՐՁԱՏՐՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՐԳԱՎՈՐԵԼՈՒ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*1. ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը, որպես կոլխոզային գյուղացիության նկատմամբ պարտիայի և*

կառավարության ջերմ հոգատարության նոր, վառ արտահայտություն։ ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի 1947 թվի Փետրվարյան պլենումի պատմական որոշման օրգանական և անբաժանելի մասը կազմող սովետական կառավարության որոշումը որպես կարևորագույն ձեռնարկում՝ մեր երկրում պարենամթերքների ու արդյունաբերական հումքի առատություն և պետական անհրաժեշտ ռեզերվներ ստեղծելու ուղղությամբ։

2. ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝ «Կոլխոզներում աշխատանքի կազմակերպումը բարելավելու, արտադրողականությունը բարձրացնելու և վարձատրությունը կարգավորելու միջոցառումների մասին» որոշումը՝ որպես կարևորագույն միջոցառում կոլխոզները կազմակերպչորեն և տնտեսապես ամրապնդելու, լիովին վերացնելու կոլխոզային շինարարության ասպարեզում գոյություն ունեցող թերությունները և ստեղծելու սոցիալիստական գյուղատնտեսության նոր, հզոր վերելք։

3. Արտադրական բրիգադների առավելագույն ամրապնդումը, բրիգադների կայուն կազմը և նոր օղակների ստեղծումը, դաշտավարական բրիգադների մշտական հողամասեր՝ առնված լրիվ ցանքաշրջաշրջանառությամբ ամրացումը, ինչպես նաև գյուղատնտեսական ինվենտար, մեքենաներ և քաշող անասուններ ամրացնելը մի կարևորագույն միջոց է կոլխոզներում աշխատանքի կազմակերպումը բարելավելու և դիմազրկությունը վերացնելու համար։



4. Կոլխոզների բրիգադներում և օղակներում բոլոր գյուղատնտեսական աշխատանքները անհատական ու մանր-խմբային գործավարձի հիման վրա կատարելը կարևորագույն ձեռնարկում է հանրային աշխատանքում յուրաքանչյուր կոլխոզնիկի շահագրգռվածությունը բարձրացնելու, դիմազրկությունը վերացնելու, կարգապահությունն էլ ավելի ամրապնդելու գործում։

5. Կոլխոզներում արտադրական օրինակելի նոր նորմաների և աշխօրերով աշխատանքի միասնական նոր գնահատումների կիրառումը կարևորագույն միջոց է, որը վերջ է դնում արտադրական իջեցրած և հնացած նորմաներին, ապահովում է ավելի բարձր վարձատրություն կարևորագույն աշխատանքներում և համապատասխանորեն բարձր վարձատրությունը ավելի բարձր բերք ստացած բրիգադների ու օղակների կոլխոզնիկներին։

6. Անասնապահության մեջ աշխատող կոլխոզնիկների աշխատանքի վարձատրության նոր կարգը, լավագույն միջոց է բարձրացնելու հանրային անասնապահության մթերատվությունը և ավելացնելու անասունների գլխաքանակը։

7. Կոլխոզների նախագահների, բրիգադիրների, անասնապահական ֆերմաների վարիչների և հաշվապահների աշխատանքի վարձատրության նոր կարգը որպես խթան. բարձրացնելու հանրային անասնապահությունը, ավելացնելու կոլխոզների դրամական եկա-

մուտները և տնտեսապես ու կազմակերպչորեն ամրապնդելու կոլխոզները։

8. ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը մեծապես կնպաստի Հայաստանի կոլխոզնիկներին՝ պատվով կատարելու մեծ առաջնորդ ընկեր Ստալինին տված խոստումը՝ ստալինյան նոր հնգամյակի 3-րդ վճռական տարում հասնելու ավելի բարձր բերքատվության, անասնապահության հետագա զարգացման։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1. ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումը՝ «Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին» (Հայպետհրատ, 1947 թ.)։

2. ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը՝ «Կոլխոզներում աշխատանքի կազմակերպումը բարելավելու, արտադրողականությունը բարձրացնելու և վարձատրությունը կարգավորելու միջոցառումների մասին» («Սովետական Հայաստան» 25 հունիսի 1948 թ.)։

3. Հայկական ՍՍՌ կոլխոզնիկների, կոլխոզնիկուհիների, սովխոզների, ՄՏ կայանների աշխատողների և գյուղատնտեսության մասնագետների նամակը ընկեր Ի. Վ. Ստալինին («Սովետական Հայաստան», 4 հունիսի 1948 թ.)։

4. «Սոցիալիստական գյուղատնտեսության նոր ու հզոր վերելքի համար» («Ագիտատորի բլոկնոտ» № 12, 1948 թ.)։



# III

## ՈՒԹ ԵՐԿՐՆԵՐԻ ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾԵՐԻ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՎԱՐՇԱՎԱՅԻ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

1. Ութ երկրների՝ ՍՍՌՄ-ի, Ալբանիայի, Բուլղարիայի, Չեխոսլովակիայի, Հարավսլավիայի, Լեհաստանի, Ռումինիայի և Հունգարիայի արտաքին գործերի մինիստրների Վարշավայի խորհրդակցությունը որպես մեծագույն ավանդ գերմանական պրոբլեմի դեմոկրատական ու արդարացի լուծման, ամբողջ աշխարհում կայուն խաղաղության հաստատելու գործում։

2. Գերմանիայի մասին Լոնդոնի խորհրդակցության որոշումների առթիվ ութ երկրների արտաքին գործերի մինիստրների Վարշավայի խորհրդակցության հունիսի 24-ի հայտարարությունը ուժեղ հարված է անգլո-ամերիկյան իմպերիալիստների սանձարձակ ու ագրեսիվ քաղաքականությանը։

3. ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի և Ֆրանսիայի Լոնդոնի խորհրդակցության որոշումները որպես Գերմանիայի քաղաքական ու տնտեսական պառակտումն ու մասնատումը ավարտելու պլան։

4. Գերմանիայի պառակտման ու մասնատման քաղաքականությունը վիժեցնում է Գերմանիայի հետ հաշտության պայմանագրի կնքումը, Գերմանիան խաղաղասեր ու դեմոկրատական պետություն դարձնելու և Եվրոպայում դեմոկրատական խաղաղության հաստատելու գործը։

5. Գերմանիայի արևմտյան զոնաներում պետական կառուցվածքի մասին Լոնդոնի խորհրդակցության ընդունած որոշումների հակադեմոկրատական բնույթը։ Այդ զոնաներում օկուպացիոն տերությունների վարած քաղաքականությունը որպես բարենպաստ հող խրախուսելու գերմանական ռևիզիոնիստական տարրերին։

6. Երեք տերությունների Լոնդոնի խորհրդակցության որոշումները հանդիսանում են «Մարշալի պլանի» օրգանական մասը և նպատակ ունեն արևմտյան Գերմանիայի էկոնոմիկան կախման մեջ դնել ԱՄՆ-ի և Անգլիայի իմպերիալիստական շրջաններից և խորացնել Եվրոպայի երկրների պառակտումը միմյանց հակադիր լագերների։

7. Լոնդոնի խորհրդակցության որոշումները հանդիսանում են Յալթայի և Պոտսդամի համաձայնությունների կոպիտ խախտում՝ Գերմանիայի ռազմական պոտենցիալը ոչնչացնելու և գերմանական նոր ագրեսիան կանխելու հարցում։

8. Գերմանական պրոբլեմի արդարացի և ճիշտ լուծումը տվեց ութ երկրների արտաքին գործերի մինիստրների Վարշավայի խորհրդակցությունը, որը հավատարիմ մնալով Յալթայի ու Պոտսդամի որոշումներին, պահանջում է.

ա) Մեծ Բրիտանիայի, ՍՍՌՄ-ի, Ֆրանսիայի և ԱՄՆ-ի համաձայնությամբ անցկացնել Գերմանիայի



ապառազմականացումը ավարտող միջոցառումներ,

բ) հաստատել Ռուրի ծանր արդյունաբերության նկատմամբ 4 տերությունների վերահսկողություն,

գ) կազմել համագերմանական ժամանակավոր դեմոկրատական կառավարություն,

դ) Հաշտության պայմանագիր կնքել Գերմանիայի հետ Պոտսդամի որոշումներին համապատասխան և

ե) միջոցառումներ մշակել, որ Գերմանիան լիովին կատարի ռեպարացիոն պարտավորությունները ագրեսիայից տուժած պետությունների հանդեպ։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

«ՍՍՌՄ-ի, Ալբանիայի, Բուլղարիայի, Չեխոսլովակիայի, Հարավսլավիայի, Լեհաստանի, Ռումինիայի և Հունգարիայի արտաքին գործերի մինիստրների Վարշավայի խորհրդակցության հունիսի 24-ի հայտարարությունը Գերմանիայի մասին Լոնդոնի խորհրդակցության որոշումների առթիվ» («Սովետական Հայաստան», 26 հունիսի 1948 թ.)։

«Պրավդայի» առաջնորդողը՝ «Պատմական կարևոր փաստաթուղթ» խորագրով («Սովետական Հայաստան» 29 հունիսի 1948 թ.)։

Ութ երկրների արտաքին գործերի մինիստրների Վարշավայի խորհրդակցությունը («Ագիտատորի բլոկնոտ» № 12, 1948)։

